⁂ Պերլինին մէջ հրատարակուած կէս – պաշտօնական զեկոյց մը կը յայտնէ թէ առ այժմ յոյս չկայ որ համաձայնութիւն մը գոյանայ իրաւունքներու հաւասարութեան հարցի մասին եւ թէ Գերմանիա որոշումներ տուած է արդէն նախատեսելով ձախողման պարագան։ Հէնտըրսընի նոր առաջարկները թերահաւատութեամբ կ'ընդունուին Գերմանիոյ մէջ։ Պ. Էրիոյի վերջին ճառն ալ կը նուազեցնէ համաձայնութեան մը հաւանականութիւնները։

## Փարիզ եւ արուարձաններ

Յ. Հ. Դ.

ՇԱՎԻԼԻ Արդութեան խումբերու ժողովը վաղը Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին, 20 Ave. d'Avray. Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

### Գաւառ

ՎԻԷՆԻ Քրիստափոր խումբի ժողովը վաղը Երկուշաբթի իրիկուն ժամը 7.30ին Հ. Յ. Դ. Խաժակ Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՏԵՍԻՆԻ կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր Կիրակի ժամը 3ին, Ակումբի ներքնայարկը։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրերով։



# ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ

9 ՀՈԿՏԵՄԲԵՐ, ԿԻՐԱԿԻ ՑԵՐԵԿ, ԺԱՄԸ ՃԻՇԴ 2.45ԻՆ

**Salle de la Mutualité** **24, rue St. Victor**
**(Métro Maubert - Mutualité)**

կազմակերպուած փարիզի եւ շրջակայքի հայ մշակութային միութիւններու եւ հաստատութիւններու կողմէ եւ Նախաձեռնութեամբ Գրական Ակումբի

Կը նախագահէ Փարիզի Գրական Ակումբի նախագահ

ՌՈՒԲԷՆ ԶԱՐԴԱՐԵԱՆ

գրական բաժին

Կը խօսին՝ Պ. Պ. ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆ եւ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

երաժշտական բաժին

«կոմիտաս երգչախումբ»՝ ղեկավարութեամբ Ն. Սերգոյեանի, Օր. Հայկանուշ Թորոսեան (երգ), Օր. Ջառափեան (դաշնակ), Պ. Տիր. Ալէքսանեան (թաւջութակ), դերասան Մաքս Մաքսուտեան (արտասանութիւն), Պ. Ֆ. Աղազարեան (ջութակ)։

թատերական բաժին

Կը ներկայացուի Յ. Պարոնեանի «Պաղտասար աղբար» կատակ. եւ «Դատաստանական խորհուրդ» տեսարանը՝ ղեկավարութեամբ Պ. Գմբէթեանի, կը մասնակցին՝ Տիկ. Տէրուան, Տիկ. Ժէնիա, Տիկ. Գայեանէ, Օր. Անգինէ, Պ. Պ. Սարիմ Մաքսուտեան, Սարաֆեան, Լաթիֆեան, Կոթիկեան և Գ.վ.ահան։

Տոմսերու գիները՝ 10 եւ 5 ֆրանք։ Կը ծախուին հայ ճաշարանները եւ Հրանտ-Սամուէլի գրատունը, 51 rue Mr. le Prince. Ներկայացման օրը Mutualitéի կիշէն, ցերեկուան ժամը 1.30էն սկսած։

## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ

Հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնեմ Տօքթ. Արշակ Պօղոսեանի (36 rue Bellefond, Paris) որ ճարտարութեամբ արմատապէս բուժեց աչքերուս հիւանդութիւնը։ Չորս տարիէ ի վեր, հակառակ շատ մը մասնագէտ բժիշկներու խնամքին, օր ըստ օրէ տեսողութիւնս կը վատթարանար եւ կը կարծուէր թէ հիւանդութիւնս անբուժելի է։

ՕՐ. ԷԼՄՈՆԷ ՃԻՎԷԼԷԿԵԱՆ

Clichy, 1 Հոկտ. 1932

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՍԻՓԱՆԻ վարչութիւնը կը խնդրէ ձեզմէ տեղեկացնել թէ՝ ղեկավար Սաքօ Յակոբեանի Փարիզէն ժամանակաւոր բացակայութեան պատճառով՝ երգչախումբը չպիտի կրնայ մասնակցիլ «Մշակոյթի Օր»ուան հանդէսին։ Երգչախումբի փորձերու վերսկսման մասին կը ծանուցուի առանձին ազդով։

ՏԵՍԻՆԻ Կ. Խաչի վարչութիւնն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամուհիները այսօր, Կիրակի ժամը 1ին Պ. Կարօի սրճարանի ներքնայարկը։ Խիստ կարեւոր օրակարգ եւ զեկոյց պարահանդէսի հաշուետուութեան։

ՎԷՆՍԷՆ եւ շրջանի մանկապարտէզի բացման հանդէսը այսօր, Կիրակի ժամը 2.30ին, մանկապարտէզի սրահը, Ա. յարկ, 1 rue du Midi, (Place de la Mairie), Vincennes.

Դասերը կը սկսին 6 Հոկտ.ին եւ շարունակաբար ամէն Հինգշբ. և Կիր. օրեր ժամը 9—12։ Կը հրաւիրուին Դպրոցասէրի կեդր. վարչութիւնը, ժամուլի, մշակութային եւ քոյր կազմակերպութիւնները։



Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)
*Le Gérant* *H. STEPHAN*



ՀԱՒԻԸՐՏ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ՀՕՄ

Պատասխանելով եղած դիմումներու, տնօրէնութիւնը կը ծանուցանէ թէ առ այժմ նոր սաներ չպիտի առնուին։

Տնօրէնութիւնը կ'օգտուի այս առիթէն իմացնելու համար որ երբ նոր մուտքեր որոշուին, բոլոր դիմումները նկատի կ'առնուին, քննութեան համար, իրենց ժամանակի կարգով։

Տրուած ըլլալով հին դիմումներու թիւը որ աւելի մեծ է քան սովորական տարուան մը ընդունելիներու թիւը, ամէն պարագայի այս տարուան դիմումներուն կարելի պիտի չըլլայ գոհացում տալ։

Ստացուած նամակներու ստուար թիւը անկարելի դարձնելով իւրաքանչիւրին առանձին պատասխանել, տնօրէնութիւնը ստիպուած է այս ծանուցումով բաւականանալ։



ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ՀՈԿՏԵՄԲԵՐ 10ԻՆ

## Յ. Գ. ՊԱՊԷՍԵԱՆԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Ունի խիստ մաքուր թուղթով ու տպագրութեամբ 104 լայնածաւալ էջեր (17 × 28 մեծութիւն)։ Կը խօսի Պատմ. Հայաստանի, Կիլիկիոյ եւ արդի Հայաստանի վրայ, տալով անոնց կենդանական, բուսական եւ հանքային հարստութիւնները եւ բնական ու քաղաքական աշխարհագրութիւնը։ Կը պարունակէ Կեսարիա, Մարզուան, Ամասիա, Եւդոկիա, Շ. Գ. Հիսար, Զէյթուն, Ուրֆա, Կարին, Երզնկա, Սեբաստիա, Մալաթիա, Խարբերդ Ակն, Վան, Մուշ եւն. եւն., Կիլիկիոյ, Պարսկահայաստանի եւ Ռուսահայաստան – Արդի Հայաստանի բազմաթիւ քաղաքները, պատմական վայրերը, կարեւոր գիւղերը, հայրենի սրբութիւնները եւ 155 հետաքրքրական տեսարաններ, Կիլիկեան թագաւորներէն ոմանց դրամները եւ ստորագրութիւնները, Ներսէս Լամբրոնացիի ձեռագիրը եւ 41 մանրանկար ու միջակ մեծութեամբ քարտէսներ, որոնք ցոյց կուտան ժամանակագրական կարգով եւ թուականներով Ս. Գրքի Ծննդոց Ժ. Գլխի նշանակած Հայաստանէն մինչեւ այսօրուան Հայաստանը՝ անոր առած սահմանային ձեւերը զանազան հին ազգերու տիրապետութեան տակ կամ օրով, Հայաստանի բաժանումէն մինչեւ 1918 ազատագրեալ Հայաստանը, Ուիլսընի գծած Հայաստանը եւ Կարսի անկումէն առաջ ու վերջ անոր արդի սահմանը։

Տրուած է պատմ. կարեւոր անցքերու եւ դէպքերու կարեւոր թուականներ, ինչպէս Քրիստոսի 341 թուականէն մինչեւ 1931 Հայաստանի մէջ պատահած 70 բուռն երկրաշարժները (17ը միայն Երզնկա), Պատմ. Հայաստանի հին գաւառներու անունները եւ անոնց համապատասխան նոր անունները եւ վերջապէս Արարատ լերան ու անոր վրայ կատարուած բազմաթիւ վերելքներու մասին աշխարհագր. եւ գիտական լայն տեղեկութիւններ։

Ամէն Հայու ճշմարիտ եւ հայրենիքի կարօտը գոհացնող ընկերը եւ սրտին խօսող միակ գիրքը, որ կ'արժէ Ֆրանսա եւ գաղթավայրեր՝ 10 ֆր., Ամերիկա՝ 70 սէնթ եւ այլուր՝ 12 ֆրանս. ֆրանք։ Կ'ընդունուին նաեւ մի միայն Ֆրանս., Պելժ., Իտալ., Եգիպտ. եւ Ամերիկեան դրոշմաթուղթ՝ իբրեւ դրամ հաւասար արժէքով։

Դիմել հեղինակին՝ BABESSIAN (առանց անուան սկզբնատառի՝ մի միայն մականունս գրել որոշ եւ անսխալ) 1bis, Rue Rouget-de-l'Isle, CHOISY - LE - -ROI (Seine) — France. փոխանակութիւն չի կատարուիր եւ ապառիկ յանձնարարութեանց բնաւ պատասխան չտրուիր։

6 օրինակ գնողին 1 օրինակ նուէր կը տրուի։ Սահմանափակ թիւով հրատարակուած ըլլալով այժմէն ապսպրել չսպառած։

բեք ամիս առաջուան վրայ, կարագին, հաւկիթին եւ միսին հագիւ մէկ չորրորդը կրնան հայթայթել: Իսկ շուկաները ոչ իսկ պակասին կէսը կրնան ճարել, եւ գիները 7—8 անգամ բարձրացած են, անցեալ գարնան վրայ:

## Արաբական Ակադեմիա

Եգիպտոսի կրթական նախարարը ծրագիր մը ներկայացուց կառավարութեան, առաջարկելով Ակադեմիա մը հաստատել Գահիրէի մէջ: Այս հաստատութիւնը ճիշդ այն դերը պիտի կատարէ արաբական լեզուներուն համար ինչ որ Ֆրանսական Ակադեմիան՝ ֆրանսերէնի համար: Ծրագիրը կը տրամադրէ: — 1· Ապահովել արաբերէնի մաքրութիւնը, եւ զայն յարմարցնել արդի կեանքի պահանջներուն, պարբերաբար նոր բառեր նշանակելով, համաձայն գիտութեան եւ ընկերային կեանքի յառաջդիմութեան եւ գործածութենէ դադրեցնելով հին վրիպումներ:— 2· Պատմական բառարան մը կազմել, սկսելով լեզուի ծագումէն մինչեւ այսօր·— 3· Գիտական ուսումնասիրութիւն մը կազմակերպել Եգիպտոսի եւ արաբախօս երկիրներու արաբական գաւառաբարբառներու մասին:

Աւելորդ է չեշտել այս ձեռնարկին կարեւորութիւնը, քանի որ, ներկայիս, գրեթէ անկարելի է արաբերէնի թարգմանել գիտական որ եւ է գործ, բառերու չգոյութեան պատճառով: Գիրքերու արաբերէնը հետզհետէ մեռեալ լեզու մը կը դառնայ նոյն այս պատճառով, քանի որ մեծապէս կը տարբերի բուն խօսուած լեզուէն, իսկ այս վերջինն ալ բազմաթիւ առանձին բարբառներու բաժնուած է:

## Մաքտօնըլտ եւ ընկերները բանադրուեցան

Անգլիոյ աշխատաւորական կուսակցութեան ընդհ· ժողովը իր հոկտ· 7ի նիստին մէջ քուէարկեց բանաձեւ մը, որուն համաձայն վարչապետ Պ· Մաքտօնըլտ, նախկին նախարար Լորտ Սնօտըն եւ գաղթային նախարար Թոմաս երբեք չեն ներկայացներ բրիտանական աշխատաւորութեան կարծիքը, հետեւաբար չեն կրնար վերադառնալ պաշտօնական կուսակցութեան ծոցը:

⁂ Ժողովը քննելով պատերազմական պարտքերու եւ հատուցումներու խնդիրը, որոշեց որ անմիջապէս բանակցութիւններ սկսին, բոլորովին ջնջելու համար թէ պարտքերը եւ թէ հատուցումները:

## Ռումանիան չուզեր ննջարկուիլ

Ազգերու Դաշնակցութիւնը վերջերս քննիչ յանձնախումբ մը ղրկած էր Ռումանիա, ելմտական վիճակը ուսումնասիրելու համար: Տրուած որոշումէն կ'երեւայ որ չորս մասնագէտներ պիտի ղրկուէին Ռումանիա, երեքը՝ ելմտական նախարարութեան մէջ, մէկն ալ Ազգ·Դրամատան մէջ ծառայելու համար: Կառավարութիւնը չպիտի կրնայ ո'ր եւ է վճարում ընել, ոչ ալ դրամատունը զանազան ձեռնարկներ կատարել, առանց այս մասնագէտներուն հաւանութեան: Կառավարութիւնը մերժեց այս առաջարկը, քանի որ տեսակ մը տնտեսական գերութիւն կը նշանակէ: Միւս կողմէ, տագնապը կը սաստկանայ, որովհետեւ գանձը ամսական 600 միլիոն լեյ բաց ունի:

### Գաւառ

Յ. Դ.



ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր խումբի ժողովը այսօր Կիրակի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայանալ անդամատետրով:

ՄԱՐՍԷՅԼԻ Պուլվար Օտտօի Վռամեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր չորս խումբերը՝ Հրայր, Մուրատ, Կայծակ եւ Գայլ Վահան այսօր Կիրակի իրիկուն ժամը 6ին, ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին:

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ Կարտանի նորակազմ Պատ. Միութեան անդամները այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին տեղւոյն Դաշնակցութեան Տան մէջ: Ներկայ պիտի ըլլան վարչութեան ներկայացուցիչները:



Imp. A. DER (Agopian) 17, Rue Damesme, Paris (13)

*Le Gérant* ***H. STEPHAN***

